Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 22 ՆՈՅԵՄԲԵՐ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





## ՍՏԱԼԻՆՅԱՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՅԻ ՕՐԸ

Տասնմեկ տարի առաջ, 1936 թվականի դեկտեմբերի 5-ին, Սովետների Համամիութենական Արտակարգ 8-րդ համագումարն ընդունեց մեր Սոցիալիստական պետության Հիմնական Օրենքը— Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության նոր Կոնստիտուցիան։ Սովետական ժողովուրդը միահամուռ կերպով այն անվանեց Ստալինյան Կոնստիտուցիա— նրա մեծ ստեղծողի՝ ընկեր Ստալինի անունով։ Ի նշանավորումն նոր Կոնստիտուցիայի ընդունման, դեկտեմբերի 5-ը հայտարարվեց համաժողովրդական տոնի օր։

***

Մինչև Ստալինյան նոր Կոնստիտուցիայի ընդունումը, Սովետական Միության մեջ գործում էր ՍՍՌՄ առաջին Կոնստիտուցիան, որն ընդունվել էր 1924 թվականին։

Այդ ժամանակից ի վեր մեր երկրի կյանքում կատարվել էին մի շարք արմատական փոփոխություններ։ Երկրի ինդուստրիալիզացիայի և գյուղատնտեսության կոլեկտիվացման բնագավառում բոլշևիկյան պարտիայի քաղաքականության անշեղ կիրառման հետևանքով ՍՍՌՄ-ում ստեղծվեց սոցիալիստական հասարակակարգ։ Ժողովրդական տնտեսության միջից դուրս մղվեցին կապիտալիստական տարրերը և միակ, իշխող սիստեմը դարձավ արտադրության սոցիալիստական սիստեմը։ Դրան համապատասխան, արմատապես փոխվեց նաև սովետական հասարակության դասակարգային կազմը։ Շահագործող դասակարգերը մեր երկրում լիկվիդացվեցին, լիովին ոչնչացվեց մարդու շահագործումը մարդու կողմից։ Սովետական հասարակությունը կազմվեց միմյանց բարեկամ երկու դասակարգերից՝ բանվորներից ու գյուղացիներից, ինչպես նաև նրանց ծոցից ելած սովետական ինտելիգենցիայից։ Տնտեսության սոցիալիստական սիստեմի շնորհիվ, որը չգիտե ճգնաժամեր և գործազրկություն, մեր երկրում մեկ ընդմիշտ վերացվեց մասսաների աղքատությունն ու քայքայումը։ Սոցիալիզմի համաշխարհային-պատմական հաղթանակները հնարավորություն տվին լիովին իրականացնելու աշխատավորների իրավունքները աշխատանքի, հանգստի, կրթության ասպարեզում։ Հսկայական չափով բարձրացավ ժողովրդի նյութական բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը։ Սոցիալիզմի հաղթանակը պայմաններ ստեղծեց սովետական կարգերի հետագա դեմոկրատացման համար, ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի կիրառման համար՝ գաղտնի քվեարկությամբ։



Անհրաժեշտ էր, որ երկրի և սովետական հասարակության կյանքում կատարված այդ բոլոր արմատական փոփոխությունները իրենց արտացոլումը գտնեին սոցիալիստական պետության Հիմնական Օրենքի—ՍՍՌՄ Կոնստիտուցիայի մեջ։

ՍՍՌՄ Նոր Կոնստիտուցիան արտացոլելով այդ բոլոր փոփոխությունները, օրենսդրականորեն ամրապնդեց այն մեծագույն նվաճումները, որ սովետական ժողովուրդը Լենին-Ստալինի փառապանծ պարտիայի ղեկավարությամբ ձեռք էր բերել սոցիալիստական հասարակակարգի կառուցման գործում 1924 թվականից մինչև 1936 թվականը

ընկած ժամանակաշրջանում։ ՍՍՌՄ Նոր Կոնստիտուցիան մեր երկրի անցած հերոսական ուղու և ձեռք բերված նվաճումների հանրագումարն է, սովետական դեմոկրատիայի ամենաբարձր արտահայտությունը։ Ստալինյան Կոնստիտուցիան, որով իրավամբ հպարտանում է սովետական ժողովուրդը, հաղթանակած սոցիալիզմի մեծագույն փաստաթուղթն է, աշխարհում ամենադեմոկրատական Կոնստիտուցիան, որը նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ։

Ստալինյան Կոնստիտուցիան սահմանեց սովետական ժողովրդի ստեղծած սոցիալիստական հասարակակարգի հիմունքները, ՍՍՌՄ հասարակական ու պետական կառուցվածքը, սովետական քաղաքացիների հիմնական իրավունքներն ու պարտականությունները։

Ի տարբերություն բուրժուական կոնստիտուցիաների, Ստալինյան Կոնստիտուցիան չի սահմանափակվում քաղաքացիների իրավունքների ձևական արձանագրումով, այլ գործնականորեն ապահովում է այդ իրավունքների անշեղ կենսագործումը, նշում է



դրանց իրականացման միջոցները և ուղիները։

Ստալինյան Կոնստիտուցիայի դրոշի ներքո, նրանով երաշխավորված աշխատանքի իրավունքով սովետական ժողովուրդը աննախընթաց պայքար ծավալեց ժողովրդական տնտեսության հետագա վերելքի, սոցիալիզմի դիրքերի ամրապնդման համար։ Երրորդ հնգամյակի միայն երեք և կես տարվա ընթացքում շահագործման հանձնվեցին մոտ 2.900 նոր արդյունաբերական ձեռնարկություններ— համարյա երկու անգամ ավելի, քան ամբողջ առաջին հնգամյակի ընթացքում։ 1940 թվականին ՍՍՌՄ արդյունաբերության արտադրանքը համարյա կիսով չափ գերազանցեց 1937 թվականի՝ երկրորդ հնգամյակի վերջին տարվա մակարդակից։

1940 թվականին մեր երկրի լայնածավալ դաշտերում աշխատում էին 523 հազար տրակտոր և 182 հազար կոմբայն։ Երրորդ հնգամյակի սկզբին ՍՍՌՄ տրակտորային պարկը գերազանցում էր Եվրոպայի բոլոր կապիտալիստական երկրների տրակտորների ընդհանուր քանակից։ 1941 թվականի սկզբին Սովետական Միությունում կար 7020 մեքե-

նա-տրակտորային կայան։ 1937 թվականին, 1916 թվականի համեմատությամբ գյուղատնտեսության մեջ էլեկտրոսարքավորումների կարողությունն ավելացավ 115 անգամ։

Հետպատերազմյան հնգամյակում վերականգնվելու և կառուցվելու են մոտ 5900 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն։ Միայն 1946 թվին շահագործման հանձնվեց մոտ 800 պետական ձեռնարկություն։

Զարգանում և բարգավաճում է մեր երկրում գիտությունն ու կուլտուրան, օր-օրին բարելավվում են աշխատավորների նյութական-կուլտուրական պայմանները, հոգատարությամբ են շրջապատված մայրերն ու մանուկները, ծերունիները, հաշմանդամները։

«ՍՍՌՄ քաղաքացիներն ունեն հանգստի իրավունք», — ասված է Կոնստիտուցիայի 119-րդ հոդվածում։ Այդ իրավունքն ապահովվում է բանվորների և ծառայողների համար 8-ժամյա աշխատանքային օր սահմանելով և աշխատանքային օրը կրճատելով մինչև 7 ու 6 ժամի, իսկ առանձին ծանր պրոֆեսիաների համար մինչև 4 ժամի։ Սովետական քաղաքացիներին ամեն տարի տրվում է արձակուրդ, պետությունը նրանց ուղարկում է սանատորիաներ, հանգստի



տներ։ Ամեն տարի հարյուր հազարավոր քաղաքացիներ կազդուրվում են սանատորիաներում, առողջարաններում։

Ստալինյան Կոնստիտուցիան լայն իրավունքներ է պարգևել սովետական քաղաքացիներին կրթության և լուսավորության ասպարեզում։ Կոնստիտուցիայի 121-րդ հոդվածում ասված է՝ «ՍՍՌՄ քաղաքացիներն ունեն կրթության իրավունք»։ Այդ իրավունքն ապահովվում է ընդհանուր պարտադիր տարրական կրթությամբ, ձրի յոթնամյա կրթությամբ, բարձրագույն դպրոցում առաջադեմ սովորողներին տրվող պետական թոշակների սիստեմով, դպրոցներում մայրենի լեզվով ուսուցանելով, գործարաններում, սովխոզներում, մեքենա-տրակտորային կայաններում և կոլխոզներում աշխատավորների համար ձրի արտադրական, տեխնիկական ու ագրոնոմիական ուսուցում կազմակերպելով։

«Այբուբեն և վերջ ուսմանը», — այսպես էր հին առածը բնութագրում գյուղի կուլտուրական մակարդակը, իսկ այժմ դժվար է գտնել մի գյուղ, որտեղ չլինեն միջնակարգ կրթությամբ մարդիկ։ Մոսկվայի մարզի Վոլոկոլամսկի շրջանի Յարոպոլեց գյուղում չկա մի ընտանիք, որտեղ չլինեն Սովետա-

կան իշխանության տարիներին բարձրագույն կրթություն ստացած մարդիկ։ Հայաստանը դարձել է համատարած գրագիտության երկիր։

Միայն ստալինյան հնգամյակների տարիներին ՍՍՌՄ-ում 60 հազար նոր դպրոց է կառուցվել։ Այդ ժամանակամիջոցում ժողովրդական լուսավորության ծախսերը կազմել են 100 միլիարդ ռուբլի։ Այժմ այդ կարիքների համար հատկացվող գումարները նախառևոլյուցիոն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել են մոտ 15 անգամ։

Ստալինյան Կոնստիտուցիայի ջերմ արևի տակ բարգավաճում է Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան։ Սովետական Հայաստանում նոր ծաղկման է հասել արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։

Ստալինյան Կոնստիտուցիան հավասար իրավունքներ է ապահովում ՍՍՌՄ բոլոր քաղաքացիների, այդ թվում կանանց համար։ Մեր երկրում կինը տղամարդու հետ համահավասար հանդիսանում է կոմունիզմի ակտիվ կառուցող։ ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 122-րդ հոդվածում ասված է. «Կնոջը



ՍՍՌՄ-ում տղամարդուն հավասար իրավունքներ են տրվում տնտեսական, պետական, կուլտուրական ու հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում»։

Կանայք մեր երկրում օգտվում են տղամարդկանց հետ հավասար իրավունքներով, բազմազավակ ու միայնակ մայրերին ցույց է տրվում պետական օգնություն, կնոջը, հղիության ժամանակ տրվում է արձակուրդ, պահպանելով աշխատավարձը, ստեղծված է մանկապարտեզների, մանկամսուրների, կոնսուլտացիաների, ծննդատների լայն ցանց։ 227 կանայք ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ են, ավելի քան 1700 կանայք ընտրված են միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետներում, ավելի քան 450 հազար կանայք տեղական Սովետների դեպուտատներ են։

Աշխատավորների շահերին համապատասխան և սոցիալիստական կարգերն ամրացնելու նպատակով ՍՍՌՄ քաղաքացիների համար ապահովվում է խոսքի ազատությունը, մամուլի ազատությունը, ժողովների և միտինգների ազատությունը, փողո-

ցային երթերի և ցույցերի ազատությունը։

Սովետական դեմոկրատիզմի մեծագույն նվաճումն է հանդիսանում ազգային հարցի հաջող լուծումը մեր երկրում։ Սովետական Միության մեջ, որը միավորում է 16 միութենական ռեսպուբլիկաներ և մի ամբողջ շարք ավտոնոմ ռեսպուբլիկաներ ու ազգային մարզեր, լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության հիման վրա ծաղկում և բարգավաճում է ՍՍՌՄ ժողովուրդների մեծ բարեկամությունը։ Այդ վառ կերպով դրսևորվեց գերմանական ֆաշիզմի և ճապոնական իմպերիալիզմի դեմ սովետական ժողովրդի մղած Հայրենական Մեծ Պատերազմում։ Բազմազգ սովետական ժողովուրդը Լենինի-Ստալինի պարտիայի գլխավորությամբ պաշտպանեց մեր երկրի ազատությունն ու անկախությունը և ապահովեց Սովետական Միության համաշխարհային-պատմական հաղթանակը Հայրենական պատերազմում։ Սովետական քաղաքացիները սրբությամբ իրագործեցին ՍՍՌՄ Կոնստիտուցիայի այն պահանջը, որ «Հայրենիքի պաշտպանությունը ՍՍՌՄ-ի յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն է»։



Սովետական ժողովրդի աննախընթաց բարոյական-քաղաքական միասնությունը, մեր երկրի բանվոր դասակարգի, գյուղացիության, ինտելիգենցիայի սերտ դաշինքի ամրապնդումը, մասսաների մեջ Լենինի-Ստալինի փառապանծ պարտիայի հեղինակության անշեղ աճումը, մեր երկրի ժողովուրդների ստալինյան մեծ բարեկամության ամրապնդումը, սովետական ջերմ հայրենասիրության ծաղկումը անհերքելի կերպով վկայում են սովետական հասարակակարգի ամենախոր դեմոկրատիզմը, նրա կենսունակությունը։

***

Որքան էլ որ բուրժուական հասարակակարգի պաշտպաններն աղաղակեն դեմոկրատիայի և հավասարության մասին, բուրժուական հասարակակարգի օրով չկա և չի կարող լինել իսկական դեմոկրատիա և հավասարություն։ «Խոսում են դեմոկրատիայի մասին, բայց ի՞նչ բան է դեմոկրատիան։ Դեմոկրատիան կապիտալիստական երկրներում, որտեղ կան հակամարտ դասակարգեր, վերջին հաշվով դեմոկրատիա է ուժեղների համար, դեմոկրատիա է ունևոր փոքրամասնության համար։ Դեմոկրատիան

ՍՍՌՄ-ում, ընդհանրապես, դեմոկրատիա է աշխատավորների համար, այսինքն դեմոկրատիա է բոլորի համար» (Ստալին)։

Գույքային և կրթական ցենզի, ազգային, ռասայական և ամեն տեսակ այլ սահմանափակումների միջոցով բուրժուական կոնստիտուցիաները քաղաքական իրավունքներից զրկում են աշխատավոր բնակչության հսկայական մասսաներին։ Բուրժուական երկրներում չկա և չի կարող լինել խոսքի, մամուլի, ժողովների իսկական ազատություն, թեև դրա մասին կեղծավորաբար հայտարարում են կառավարող դասակարգերը։

Ինչպես հայտնի է, բրիտանական կայսրության մեջ բնակչության մեծ մասը — 547 միլիոնից՝ 499 միլիոնը միանգամայն կտրված է պետության կառավարումից, չի ներկայացված անգլիական պառլամենտում և չի մասնակցում իր երկրի համար օրենքների մշակմանը։ Դոլարային «դեմոկրատիան» է իշխում Ամերիկայի Միացյալ Նահանգներում, որտեղ երկիրը ղեկավարում են 60 ընտանիք։

Հարավ-Աֆրիկյան Միությունում ազգային փոքրամասնությունների համար գոյու-



թյուն ունի անարդարացի, հակադեմոկրատական խտրական ռեժիմ։ Այնտեղ մինչև այժմ էլ պահպանվում է այսպես կոչված «հետտո»-ն կամ նստակեցության գիծը հընդիկների ու նեգրերի համար, որոնց թույլ չի տրվում բնակվել որոշ վայրերում։ Սևամորթներին արգելված է ունենալ հող և անշարժ գույք։ Բոլոր հնդիկները զրկված են ընտրական իրավունքից։

Իմպերիալիստական երկրների ռեակցիոներները փորձում են վատաբանել սովետական դեմոկրատիան, նրան հակադրելով «արևմտյան դեմոկրատիան», դոլարային «դեմոկարտիան»։ Սակայն կյանքը ցույց է տալիս բուրժուական դեմոկրատիայի իսկական դեմքը։ Չերչիլլի, Տրումենի և տարբեր երկրներում նրանց ռեակցիոն բարեկամների տիպի «դեմոկրատները» ընդունում են միայն այնպիսի «դեմոկրատիա», որը նրանց թույլ է տալիս գաղութային ստրկության մեջ պահել հարյուր միլիոնավոր մարդկանց, նրանք փառաբանում են այնպիսի «դեմոկրատիան», որն ապահովում է դոլարի տիրապետությունը, մոնոպոլիաների և բանկերի տիրապետությունը, նրանք անամոթաբար դեմոկրատիայի օրինակ են

հայտարարում Հունաստանի ռեակցիոն ռեժիմը, որը հաստատված է անգլիական սվինների ուժով։

***

Ստալինյան Կոնստիտուցիայի ընդունման օրից անցած 11 տարվա ընթացքում մեր երկրի աշխատավորները, Ստալինյան Կոնստիտուցիայի հիման վրա, մի քանի անգամ ընտրել են իրենց բարձրագույն օրգանները, մեկ մարդու պես ձայն տալով կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջին ընտրությունները, որոնք տեղի ունեցան 1937 թվին, ցույց տվին, որ Սովետական Կոնստիտուցիան իսկական ժողովրդական, իսկական դեմոկրատական Կոնստիտուցիա է։ Սովետական ամբողջ ժողովուրդը, մոտենալով քվեատուփերին, իր առաջին ձայնը տվեց ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիայի ստեղծող մեծ Ստալինին, միաժամանակ ձայն տվեց մեր Հայրենիքի արժանավոր զավակներին։

Երկրորդ համաշխարհային պատերազմը վերջանալուց կես տարի չանցած, մեր երկրի աշխատավորները 1946 թվի փետրվարի 10-ին կրկին անգամ դրսևորեցին իրենց



անհուն սերն ու նվիրվածությունը դեպի Սովետական իշխանությունը, Լենին-Ստալինի փառապանծ պարտիան, դեպի մեր մեծ առաջնորդ ընկեր Ստալինը։ Այդ ընտրություններին ներկայացավ ընտրողների 99,7 տոկոսը։ Քվեարկողների 99,18 տոկոսը ձայն տվեց կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին։

1947 թվի փետրվարի 9-ին Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրություններին մասնակցողների 99,81 տոկոսը ձայն տվեց ստալինյան բլոկի թեկնածուների օգտին։

Ստալինյան Կոնստիտուցիայի հովանու ներքո սովետական ժողովուրդը ներկայումս եռանդուն կերպով նախապատրաստվում է իշխանության տեղական օրգանների — աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրություններին։ Սովետական ժողովուրդն արտադրական բարձր ցուցանիշներով, ստալինյան նոր հնգամյակի պլանների կատարման ասպարեզում ձեռք բերած մեծագույն հաղթանակներով է դիմավորում տեղական Սովետների ընտրությունները։ Բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ արագ թափով վերականգ-





նըվում է մեր երկրի ժողովրդական տնտեսությունը, փլատակների տակից բարձրանում են պատերազմի հետևանքով ավերված քաղաքներն ու հրկիզված գյուղերը։ Սովետական ժողովուրդը անձնվիրաբար պայքարում է հետպատերազմյան հնգամյակը չորս տարում կատարելու համար։

Կոլխոզային գյուղի աշխատավորները ջանք չեն խնայում սոցիալիստական գյուղատնտեսության նոր հուժկու վերելքի համար։ Այս տարի կոլխոզային գյուղն առատ բերք հավաքեց։ Հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը այս տարի 58 տոկոսով բարձր է անցյալ տարվա համեմատությամբ։

Սովետական Միությունն ամուր կանգնած է դեմոկրատական խաղաղության և ժողովուրդների անվտանգության պաշտպանության դիրքերում։ Աճում և ամրապնդվում է Սովետական Միության հեղինակությունը իբրև խաղաղության և դեմոկրատիայի հուսալի պատվարը։

Սովետական երկիրը Ստալինյան Կոնստիտուցիայի 11-րդ տարեդարձը նշում է ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում ձեռք բերված մեծագույն հաղթանակներով։ Սովետական ժողովուրդը, Լենինի-Ստալինի պարտիայի վեհ դրոշի ներքո, մեծ Ստալինի առաջնորդությամբ ընթանում է դեպի կոմունիզմի հաղթանակը մեր երկրում։



Մեր երկրի աշխատավորները, ինչպես միշտ, այս ընտրություններում ևս ՍՍՌՄ Կոնստիտուցիայի դրոշի ներքո կգնան դեպի քվեատուփերը և իրենց առաջին ձայնը կտան մեծ առաջնորդ ընկեր Ստալինին, միահամուռ կերպով կքվեարկեն կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին, մեր փառապանծ Հայրենիքի հետագա ծաղկման և սովետական ժողովրդի երջանկության օգտին։

—·—✻——

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՆՈՐԱՐԱՐՆԵՐԸ

Լենինգրադի արդյունաբերության բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողներն ու ծառայողները դիմեցին Սովետական Միության արդյունաբերության բոլոր աշխատողներին՝ կոչ անելով հետպատերազմյան ստալինյան հնգամյակը կատարել ժամկետից շուտ՝ չորս տարում։

—Որպեսզի մեր երկիրը դառնա է՛լ ավելի հզոր և կյանքը նրանում դառնա է՛լ ավելի լավ ու գեղեցիկ, մենք պետք է աշխատենք մեր ուժերի է՛լ ավելի մեծ լարումով, չհանգստանանք ձեռք բերվածով, ձգտենք նորանոր հաջողությունների։

Այսպես են գրում ռևոլյուցիայի օրրան՝ Լենինի անվան քաղաքի արդյունաբերության աշխատողները։

— Կա՛, հնգամյակը չորս տարում։

Այսպես են լենինգրադցիներին արձագան-



քում հզոր Սովետական երկրի արդյունաբերության բոլոր աշխատողները։

Արդյունաբերության աշխատողները, արտադրության նորարարները շատ փառավոր գործերով են իրենց հռչակել սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում։ Արդյունաբերության, տրանսպորտի, նորակառույցների աշխատողների քաղաքական և արտադրական վերելքը նոր ուժով դրսևորվեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցության ժամանակ։ Ամփոփելով այդ մրցության արդյունքները, ընկ. Վ. Մ. Մոլոտովը Մոսկվայի Սովետի 1947 թվականի նոյեմբերի 6-ի հանդիսավոր նիստում ասաց.

«Ներկայիս սովետական մարդկանց հոգևոր նկարագիրը երևում է, ամենից առաջ, գիտակցական վերաբերմունքի մեջ իրենց աշխատանքի նկատմամբ, որպես հասարակական կարևորություն ունեցող գործի և որպես սրբազան պարտականության՝ Սովետական պետության հանդեպ... Մրցության թափի ծավալը և բովանդակությունն այժմ որոշում են սովետական մարդկանց մեջ աշխատանքի նկատմամբ այստեղ կամ այնտեղ

ձեռք բերված կոմունիստական վերաբերմունքի մակարդակը։ Մրցության համընդհանուր բնույթը աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևորագույն լծակն է հանդիսանում։

Մեր երկրի առաջավոր արտադրական ձեռնարկությունների և առաջավոր մարդկանց օրինակով հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար անձնվիրաբար պայքարում են Սովետական Հայաստանի արդյունաբերության աշխատողները։ Նրանց առաջավոր ջոկատը, արտադրության նորարարները, սովետական հայրենասիրությամբ տոգորված, ընթանում են սոցիալիստական մրցության ավանգարդում և իրենց լավագույն օրինակով ոգեշնչում, առաջ են տանում մյուսներին։

Երևանում, Լենինականում, Կիրովականում, Ալավերդում, Ղափանում արտադրության առաջավորները, կատարելով մրցության մեջ ստանձնած իրենց պարտավորությունները, ցույց տվեցին աշխատանքի արտադրողականության բարձրացման հիանալի օրինակներ։

Այդպիսի առաջավորներից է Լենինականի շոգեքարշային դեպոյի անվանի ստախանո-



վական Ս. Ղազարյանը, որը Հայաստանում առաջինը կատարեց իր հնգամյա առաջադրանքը։ Ընդամենը 10 ամսում նա կատարեց հինգ տարվա առաջադրանք։ Դա հեշտ գործ չէ, մանավանդ որ Ղազարյանի համար ոչ մի արտակարգ պայման գոյություն չուներ։ Նա դեպոյում աշխատում էր որպես զոդող և նույն պայմաններում, ինչ որ մյուս զոդողները, նույն գործիքներով, ուժեղ լույսից պաշտպանվելու համար նույն վահանաձև պահպանակով,— բոլորը նույնն էր։

Զոդումը նուրբ և դժվարին գործ է, նա պահանջում է ստույգ կատարում։ Լավ զոդողը կարող է այնպես կատարել գործը, որ չեք տարբերի կաղապարված ամբողջական դետալից։

Ահա ձեր ձեռքին է զոդված դետալը։ Եթե աշխատանքը կատարված է ճշտությամբ,— հիանալի է, իսկ եթե անփույթ է կատարված,— միևնույն է, շուտ կկոտրվի, կփչանա։ Լենինականում ստախանովական Ղազարյանի մասին ասում են, թե նա արվեստով է զոդում։ Այդ ամենամեծ գնահատականն է զոդողի համար։

Երբեմն դուք ականատես եք լինում, թե ինչպես թեժ աշխատանքի ընթացքում զոդողը

շտապ վազում է գործիքի հետևից։ Այս բանը չի կարելի տեսնել Ղազարյանի մոտ։ Նա աշխատում է այնպես, ինչպես վիրահատության ժամանակ հմուտ բժիշկը։ Իհարկե, նրա շուրջը ոչ ոք չկա, ոչ ոք գործիք չի մատուցում նրան, այլ ամեն ինչ վաղօրոք դրված է իր տեղը, պատրաստի վիճակում։ Այսպիսի նախապատրաստությունը ստախանովական Ղազարյանին հնարավորություն է տալիս արդյունավետ օգտագործելու աշխատանքի յուրաքանչյուր ժամն ու րոպեն։

Բայց այդ դեռ բոլորը չէ արտադրողականության բարձրացման այդպիսի բարձր ցուցանիշների հասնելու համար։ Արտադրության տեխնոլոգիայի խորն ուսումնասիրությունը, դազգահի վրա բարեփոխումներ կատարելը հնարավորություն տվին արագացնելու աշխատանքի տեմպը, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը։

Կա մեկ ուրիշ պայման ևս։ Ընկ. Ղազարյանը առաջադրանքն ընդունում է ո՛չ մեխանիկորեն, այլ ընդունելով՝ մանրամասն ուսումնասիրում է այն, ծանոթանում գծագրի հետ, երբեմն էլ իր առաջարկությունն անում ինժեներին՝ այս կամ այն աշ-



խատանքն ավելի արդյունավետ կազմակերպելու համար։ Պակաս նշանակություն չունի նաև այն, որ Ղազարյանն օրվա առաջադրանքը պահանջում է նախօրոք։

—Բանվորն առավոտյան աշխատանքի անցնելիս պետք է նախօրոք իմանա իր առաջադրանքը,— ասում է նա,— որպեսզի նախապատրաստվի դրա կատարմանը և արդյունավետ օգտագործի յուրաքանչյուր ժամը, րոպեն։

Այժմ անվանի ստախանովականն աշխատում է իբրև զոդման ցեխի վարպետ և իր հարուստ փորձը հաղորդում է ցեխի բոլոր աշխատողներին, որպեսզի ամբողջ ցեխը ժամկետից շուտ կատարի ստալինյան նոր հնգամյակը։

Երևանի Գյուղատնտեսական գործիքների գործարանում 12 ստախանովականներ արդեն կատարել են իրենց հնգամյա առաջադրանքները։

Հայրենական պատերազմի տարիներին հռչակված խառատ Գ. Ղազանչյանն աշխատանքի արտադրողականության բարձրացման հիանալի օրինակ է տալիս նաև նոր հնգամյակի կենսագործման համար մղվող պայքարում։ Ինժեներա-տեխնիկական անձ-

նակազմի ամենաջերմ աջակցությամբ Ղազանչյանը բարեփոխեց խառատային դազգահը, մի քանի նորամուծություններ կատարեց տեխնոլոգիական պրոցեսների մեջ։

Գործարանն սկսել է թողարկել միկրոգէսներ, տրակտորի պարկուճներ, գյուղատնտեսական գործիքներ, որոնց խառատային մշակումն ամբողջովին պատկանում է Ղազանչյանին և նրա ընկերներին։ Երբ ստախանովական խառատին Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ առաջադրեցին, նա խոստացավ առաջինը կատարել հնգամյա պլանը։ Խոստացավ և կատարե՛ց։ Այժմ, արձագանքելով լենինգրադցիների կոչին, նա խոստացել է մինչև 1950 թվականը կատարել ևս երկու հնգամյակի առաջադրանք։ Իր խոստման հետևյալ օրը Ղազանչյանը կատարեց 11 նորմա։

Հնգամյա պլանը կատարածների փառապանծ ընտանիքին է պատկանում նաև նույն գործարանի ստախանովական Ա. Օհանյանը։ Մանրամասն ուսումնասիրելով և արմատավորելով Ուրալի տեխնոլոգ Իվանովի մեթոդը, նա մի շարք բարեփոխումներ մտցրեց տեխնոլոգիական պրոցեսների մեջ, որի շնորհիվ մի քանի անգամ բարձրացավ աշ-



խատանքի արտադրողականությունը, բարելավվեց արտադրանքի որակը և հեշտացավ բանվորի աշխատանքը։ Նորարար Օհանյանի առաջարկով, միկրոգէսների արտադրության մեջ դեֆիցիտային գունավոր մետաղը փոխարինվեց չուգունով, որից պատրաստված մասերն ավելի դիմացկուն են և էժան։

Իր երկարամյա աշխատանքի հարուստ փորձը ստախանովական Օհանյանը հաղորդում է երիտասարդ բանվորներին։ Միայն այս տարի նա որակավորել է չորս բանվոր, որոնցից հայրենադարձներ Ս. Մարտիրոսյանը և Ս. Նազիկյանը, աշխատելով ինքնուրույն կերպով, արդեն գերակատարում են օրվա առաջադրանքները։

Իրենց հնգամյա պլաններն արդեն կատարած ստախանովականներ Ա. Օհանյանը, Տ. Ստրինսկին, Գ. Մանուկյանը, Տ. Դողրումաջյանը, Հ. Հարությունյանը, Գ. Ներսիսյանը, Վ. Դանիելյանը և ուրիշներ, ի պատասխան լենինգրադցիների կոչին, պարտավորություն են ստանձնել մինչև նոր հնգամյակի վերջը կատարել ևս մեկից-երկու հընգամյակի պլան։

Այսպիսի անվանի ստախանովականների շնորհիվ Գյուղատնտեսական գործիքների

գործարանը ոչ միայն դուրս եկավ հետամնաց վիճակից, այլև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակը դիմավորեց Ստալինյան նոր հնգամյակի երկրորդ տարվա պլանը կատարած։

Այսպես, օրեցօր ավելանում է հնգամյակը ժամկետից շուտ կատարող ստախանովականների թիվը։ Ընկ. Վ. Մ. Մոլոտովը Մեծ Հոկտեմբերի 30-ամյակի մասին Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում տված իր պատմական զեկուցման մեջ բարձր գնահատելով մեր արդյունաբերության աշխատողների կոմունիստական վերաբերմունքը հետպատերազմյան հնգամյակի կենսագործման համար նրանց անձնվեր պայքարում, ասաց. «Այժմ լայնորեն ծավալվում է այն նոր շարժումը, որ առանձին բանվորներ ստանձնում են տարեկան պլանները և ամբողջ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու անձնական պարտավորություններ, մի բան, որ չի եղել նախապատերազմյան ժամանակ»։

Լենինգրադցիների հայրենասիրական նոր նախաձեռնությունը հանդիսացավ մեծ գործերի, աշխատանքային նորանոր սխրագործությունների մղող մի կանչ, որին ջերմո-



րեն արձագանքում են Սովետական Հայաստանի արդյունաբերության աշխատողները։

—Հնգամյակը չորս տարու՛մ։

Այս նշանաբանով են սկսում իրենց աշխատանքային առօրյան մեր գործարանների, ֆաբրիկաների, պղնձահանքերի, նորակառույցների մարդիկ։

Լենինգրադցիների հայրենասիրական նոր նախաձեռնությունը մեր արդյունաբերության աշխատողների հոգևոր ուժի արտահայտությունն է, նրանց նվիրվածությունը բոլշևիկների պարտիային, Սովետական կառավարությանը, մեծ Ստալինին։

Վ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ



## ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ

*Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով 1947 թ. դեկտեմբերի 21-ը նշանակված է Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունների օր։*

*Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների կամպանիան տեղի է ունենում մեր Ռեսպուբլիկայի աշխատավորների արտադրական-քաղաքական ակտիվության աննախընթաց աճման, արդյունաբերության և գյուղատնտեսության հետագա վերելքի, արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու համար մղվող հերոսական պայքարի պայմաններում։*

*Տեղական Սովետների ընտրությունների ներկա կամպանիան իր ծավալով հանդիսանում է ամենամեծ մասսայական կամպա-*



*նիան։ Շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետներում ընտրվելու են ավելի քան 12000 դեպուտատ։ Ընտրական հանձնաժողովներում ընդգրկված են մոտ 30 հազար մարդ, ավելի քան 25 հազար մարդ աշխատում են որպես ագիտպունկտերի վարիչներ և ագիտատորներ։*

*Անցյալ ընտրական կամպանիաների ընթացքում կուտակվել է ագիտացիոն աշխատանքի հարուստ փորձ։ Այդ փորձն իր բազմազան ձևերով ու մեթոդներով լայնորեն պետք է օգտագործվի նաև այս ընտրական կամպանիայի ընթացքում։*

*Ներկայումս ամենուրեք բուռն թափով ընթանում է ընտրությունների նախապատրաստությունը, լայնորեն ծավալվել է ագիտացիոն աշխատանքը։*

*Այսպես օրինակ, Կալինինոյի շրջանում 270 ագիտատորներ կոլխոզներում, բրիգադներում և օղակներում զրույցներ են անցկացնում Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի և ընտրությունների Կանոնադրության մասին։ Վերանայված և զգալիորեն համալրված է ագիտատորների կազմը։ Ագիտացիոն աշխատանքի մեջ լայնորեն ներգրավվում են*

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների շրջանում հարուստ փորձ կուտակած ագիտատորները։ Շրջանի Պրիվոլնոյե գյուղի ագիտատորները կոլխոզնիկների հետ անցկացրել են 12 զրույց Կոնստիտուցիայի մասին, պարզաբանում են ընտրությունների Կանոնադրությունը։

«Արարատ» գործարանի ագիտատորները նույնպես լայն աշխատանք են ծավալում ընտրությունների Կանոնադրությունն ուսումնասիրելու ուղղությամբ։ Ագիտատորներն իրենց զրույցների ընթացքում օգտագործում են թերթերում, ժուռնալներում տպագրվող հարուստ փաստական նյութը։ Զրույցներ են անցկացվել Մ. Ի. Կալինինի «Ի՞նչ տվեց Սովետական իշխանությունը ՍՍՌՄ-ի աշխատավորներին» բրոշյուրի շուրջը։

Ագիտատոր՝ ինժեներ Մ. Ադիբեկյանը զրույց է անցկացրել «Մի քանի կոմպարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության ընդունած դեկլարացիայի» շուրջը։ Իր զրույցի համար նա օգտագործել է Միավորված Ազգերի կազմակերպության Գլխավոր Ասամբլեայի երկրորդ սեսիայում ընկ. Վիշինսկու ելույթները։



Ագիտատոր ընկ. Գ. Գասպարյանն իր խմբի ունկնդիրներին պատմել է, թե ինչ է դարձել Երևանը Սովետական իշխանության օրով։ Նա ունկնդիրներին հիշեցրեց նախկին հետամնաց նահանգական քաղաք Երևանի մասին, համեմատելով նրա հետ ներկայիս նոր, սոցիալիստական Երևանը իր թատրոններով, թանգարաններով ու գրադարաններով, գործարաններով ու ֆաբրիկաներով։

Իրենց ագիտացիոն աշխատանքի ընթացքում ագիտատորները կոնկրետ փաստերով պարզաբանում են աշխատավորներին սովետական հասարակակարգի, նրա պետական կառուցվածքի, իսկական ժողովրդական դեմոկրատիայի առավելությունները բուրժուական հասարակակարգի ու կեղծ դեմոկրատիայի նկատմամբ, մասսայականացնում են մեր երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հաջողությունները, ցույց են տալիս նոր հնգամյակի կենսագործումը ինչպես ամբողջ Միության մեջ, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի, իրենց շրջանի, քաղաքի, գյուղի, ավանի, գործարանի, կոլխոզի մասշտաբով։

Ընտրական կամպանիայի ընթացքում բոլշևիկյան ագիտացիայի հիմնական խնդիրն է

աշխատավորներին պարզաբանել Ստալինյան Կոնստիտուցիայի մեծ սկզբունքները. Սովետական պետության գոյության երեսուն տարվա ընթացքում ձեռք բերած վիթխարի նվաճումները, մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի համաշխարհային-պատմական նշանակությունը, սովետական ժողովրդի մեծագույն հաղթանակը Հայրենական պատերազմում։ Մասսայական-քաղաքական ագիտացիան պետք է է՛լ ավելի բարձրացնի սովետական մարդկանց մեջ ազգային հպարտությունը, է՛լ ավելի ուժեղացնի սովետական հայրենասիրությունը և ժողովուրդների բարեկամությունը, բարձրացնի սովետական քաղաքացու զգոնությունը, նրա մեջ դաստիարակի անսահման սեր և նվիրվածություն դեպի Սոցիալիստական Հայրենիքը, դեպի Լենինի-Ստալինի փառապանծ պարտիան։

Ագիտատորները պետք է աշխատավորներին բացատրեն ներկա միջազգային դրությունը, Սովետական Միության դերը՝ որպես ժողովուրդների խաղաղության և անվտանգության հզոր հենարան, ցույց տան, որ ՍՍՌՄ-ն իր շուրջը համախմբելով բոլոր դեմոկրատական ուժերին, աննկուն պայքար է մղում ընդ-



դեմ իմպերիալիստական ռեակցիայի և նոր պատերազմի հրձիգների։

Ագիտատորների զրույցները բովանդակալից և հետաքրքիր կլինեն միայն այն դեպքում, երբ կոնկրետ փաստերով և օրինակներով ցույց տրվի այն վիթխարի աշխատանքը, որ կատարում է մեր երկրի աշխատավորությունը։ Բոլշևիկյան մարտական ագիտացիան կնպաստի մեր ներկա խնդիրների հաջող կատարմանը, սոցիալիստական մրցության հետագա ծավալմանը։

Ագիտացիոն աշխատանքի ընթացքում անհրաժեշտ է հաշվի առնել, թե բնակչության ինչպիսի խմբի հետ է տարվում ագիտացիան, պետք է նկատի ունենալ ունկնդիրների կուլտուրական ու քաղաքական զարգացման աստիճանը, տարիքը։

Առանձնահատուկ մոտեցում պետք է ունենալ հայրենիք վերադարձած սովետական նոր քաղաքացիների նկատմամբ, որոնք այս տարի առաջին անգամ մասնակցելու են տեղական Սովետների ընտրություններին։ Չպետք է մոռանալ, որ նրանք երկար տարիներ թափառել են օտար երկնքի տակ՝ զուրկ տարրական իրավունքներից ու ապրուստի միջոցներից, ենթարկվել են ամեն

տեսակ հալածանքների և միշտ տենչացել են վերադառնալ հայրենիք՝ Սովետական Հայաստան։

Սովետական նոր քաղաքացիներին պետք է բացատրել, որ նրանց բաղձանքը իրականացել է շնորհիվ Սովետական իշխանության և Ստալինյան Կոնստիտուցիայի, շնորհիվ ընկեր Ստալինի հայրական հոգատարության։ Ագիտատորները պետք է պարզ ու մատչելի լեզվով պարզաբանեն նրանց ներկա ընտրությունների քաղաքական խոշոր նշանակությունը, Ստալինյան Կոնստիտուցիայի բարձր սկզբունքները, բացատրեն աշխատավորների իրավունքներն ու պարտականությունները և այլն։

Սովետական նոր քաղաքացիների մեջ կատարվող ագիտացիոն աշխատանքը հետաքրքիր կլինի հատկապես այն ժամանակ, երբ ագիտատորները զրույցների ընթացքում հենց իրենց՝ հայրենադարձ հայերի կյանքից վերցրած օրինակներով ցույց տան նրանց խղճուկ ու իրավազուրկ կյանքն անցյալում, պարզաբանեն նրանց, որ ի տարբերություն բուրժուական կեղծ դեմոկրատիայի, որը հանդիսանում է կապիտալի իշխանությունը քողարկելու և աշխատավորական



մասսաներին շահագործելու միջոց, սովետական դեմոկրատիան, հանդիսանալով դեմոկրատիա բոլոր աշխատավորների համար, ժողովրդական լայն մասսաներին դարձնում է քաղաքական կյանքի, պետական և հասարակական գործերի ակտիվ մասնակից։

Ընտրողների մեջ տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի կենտրոնն են ագիտպունկտերը, որոնք կազմակերպվում են ընտրական տեղամասերին կից։ Ագիտպունկտերում պետք է կազմակերպել զրույցներ, ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետների դեպուտատների ելույթներ, տեղական Սովետների դեպուտատության թեկանծուների հանդիպումներ իրենց ընտրողների հետ։ Լայնորեն պետք է օգտագործել անցյալ ընտրությունների ժամանակ երիտասարդ ընտրողների, տնային տնտեսուհիների, սովետական նոր քաղաքացիների ժողովներ ու հավաքներ կազմակերպելու պրակտիկան։

Ագիտպունկտերը պետք է կազմակերպեն իրենց քաղաքի, շրջանի, գյուղի, ավանի, գործարանի, կոլխոզի, սովխոզի նվաճումներն ու հեռանկարներն արտացոլող ցուցահանդեսներ, գեղարվեստական երեկոներ և էքսկուրսիաներ դեպի թանգարանները։

Ագիտպունկտներում անհրաժեշտ է կենտրոնացնել ընտրական հարուստ գրականություն, թերթեր, ամսագրեր, պլակատներ, լոզունգներ։ Ագիտպունկտներին կից պետք է կազմակերպել տեղեկատու սեղաններ, ինչպես նաև կոնսուլտացիաներ՝ ընտրողներին հետաքրքրող բոլոր հարցերը պարզաբանելու համար։

Ընտրական կամպանիայի ներկա շրջանում բացառիկ կարևոր նշանակություն ունի դեպուտատության թեկնածուների օգտին մղվող ագիտացիան։ Այդ ագիտացիայով է պայմանավորված աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների հաջող ընթացքը։

Աշխատավորներին պետք է մանրամասն ծանոթացնել դեպուտատության թեկնածուի կենսագրությանը, ծանոթացնել նրա հասարակական-քաղաքական և աշխատանքային գործունեության հետ, նրա արժանիքների հետ, ցույց տալ, որ նրան աճեցրել, դաստիարակել է Լենինի-Ստալինի պարտիան։

Դեպուտատության թեկնածուի օգտին մղվող ագիտացիայի կարևոր ձևերից մեկը դեպուտատության թեկնածուի հանդիպումն է իր ընտրողների հետ։ Այդ հանդիպումների



կազմակերպման լավագույն միջոցներ են աշխատավորների մասսայական ժողովները, տնային տնտեսուհիների, երիտասարդ ընտրողների հավաքները։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի բոլոր ձևերն ու մեթոդները լայնորեն օգտագործելու միջոցով ապահովենք տեղական Սովետների ընտրությունների հաջող ընթացքը, աշխատավորների դեպուտատների տեղական Սովետներում այնպիսի մարդկանց ընտրությունը, որոնք ապացուցել են իրենց նվիրվածությունը Սոցիալիստական Հայրենիքին և իրենց աշխատանքով նվաճել են աշխատավոր մասսաների հարգանքն ու վստահությունը։

Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ



## ԻՆՉՊԵՍ Է ՍՈՎԵՏԱԿԱՆ ՕՐԵՆՔՆ ԱՊԱՀՈՎՈՒՄ ԸՆՏՐՈՂՆԵՐԻ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԸ

Իսկական ազատ և դեմոկրատական ընտրություններ, որոնց մասին երազել են մարդկության լավագույն ներկայացուցիչները, գոյություն ունի միայն մեզ մոտ՝ Սովետական Միությունում։

Սովետական դեմոկրատիան ոչ միայն ամենալայն հնարավորություններ է տալիս յուրաքանչյուր ընտրողին՝ արտահայտելու իր կամքը, այլև ընտրական օրենքով իսկապես երաշխավորում է նրա այդ իրավունքը և ոչ ոք չի կարող այս կամ այն կերպ կաշկանդել սովետական ընտրողի կամքի ազատ արտահայտումը։ Սովետական ընտրական սիստեմը բացառում է ընտրող քաղաքացիների իրավունքների որևէ սահմանափակում, որևէ ճնշում։

Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 109-րդ հոդվածի հիման վրա, Հայկական ՍՍՌ



աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունների Կանոնադրության 1-ին հոդվածը ասում է, որ աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների դեպուտատների ընտրությունները կատարում են ընտրողները՝ ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ։

Ընտրական օրենքը հետևողականորեն և խստիվ ապահովում է սովետական քաղաքացու, որպես ընտրողի և ընտրվողի բոլոր իրավունքները։

Ի՞նչպես է կատարվում այդ։

Ընտրողների ցուցակները կազմելիս, կարող է պատահել, որ մի քանի քաղաքացիներ, որոնք ընտրելու իրավունք ունեն, մտցված չլինեն ցուցակների մեջ, կամ հակառակը, կարող են պատահել նաև այլ անճշտություններ (ազգանվան, տարիքի և այլն)։ Նման դեպքում քաղաքացին իրավունք ունի բողոքարկելու աշխատավորների դեպուտատների Սովետի գործադիր կոմիտեին, որը պարտավոր է 3 օրվա ընթացքում քըն-

նել և լուծում տալ քաղաքացու դիմումին և այդպիսով ուղղել ընտրական ցուցակում եղած անճշտությունը։ Սովետի գործադիր կոմիտեի որոշման հետ համաձայն չլինելու դեպքում դիմողը կարող է բողոքարկել ժողդատարանին, որը ամենաուշը 3 օրվա ընթացքում պարտավոր է քննել և լուծում տալ բողոքին, ընդորում դատարանի վճիռը վերջնական է։

Սովետական ընտրողի իրավունքները պաշտպանելու գործում մեծ դեր են կատարում ընտրական հանձնաժողովները, որոնք կազմվում են բանվորների ու ծառայողների պրոֆկազմակերպությունների, կոմունիստական պարտիական կազմակերպությունների, երիտասարդական կազմակերպությունների և օրենքով սահմանված կարգով գրանցված հասարակական այլ կազմակերպությունների ու աշխատավորների ընկերությունների ներկայացուցիչներից։ Ընտրական հանձնաժողովները հսկում են ընտրությունների անշեղ կատարմանը, ընտրողների իրավունքների պաշտպանմանը։

Օրինակ, շրջանային ընտրական հանձնաժողովը հսկում է շրջանի տերիտորիայում աշխատավորների դեպուտատների շրջանա-



յին Սովետի ընտրությունների ընթացքում ընտրությունների կանոնադրության անշեղ կատարմանը, քննում է աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետի ընտրությունների ընտրական հանձնաժողովների ոչ-ճիշտ գործողությունների առթիվ տրված բողոքները, հսկում է ընտրողների ցուցակները ժամկետին կազմելուն ու ընդհանուրի գիտությանը հասցնելուն և այլն։

Հայկական ՍՍՌ ամեն մի քաղաքացի իրավունք ունի աշխատավորների դեպուտատների քաղաքային և քաղաքային-ռայոնական, գյուղական և ավանային կամ շրջանային ընտրական հանձնաժողովներին բողոքարկել ընտրական հանձնաժողովների ոչ ճիշտ գործողությունների առթիվ։

Սովետական ընտրական օրենքը նախատեսում է անհրաժեշտ ամեն բան, որով կըհեշտանա ամեն մի ընտրողի ներկա լինելը ընտրության վայրում և իրականում ապահովում է ընտրությունների ընդհանուր լինելը։

Ընտրվողների իրավունքը նույնպես պաշտպանվում է սովետական օրենքով։ Յուրաքանչյուր դեպուտատության թեկնածու գրանցվում է օկրուգային ընտրական հանձ-

նաժողովի կողմից, իսկ գրանցված բոլոր թեկնածուները մտցվում են ընտրական բյուլետենների մեջ։

Դեպուտատության թեկնածուին գրանցելուց հրաժարվելու դեմ կարելի է երկու օրվա ընթացքում բողոքարկել համապատասխան ընտրական հանձնաժողովին, որի որոշումը վերջնական է։

Սովետական ընտրական օրենքն ապահովում է գրանցված դեպուտատության թեկնածուի օգտին ագիտացիայի լիակատար ազատություն։ Այդ ազատության խախտումը հետապնդվում է օրենքով։

Ագիտացիայի ազատության համար մեզ մոտ կան նյութական բոլոր պայմանները։ Մամուլը, ռադիոն, տպարանները, հասարակական շենքերը մեզանում գտնվում են աշխատավորների հասարակական կազմակերպությունների տրամադրության տակ, այլ ոչ թե մասնավոր տերերի, ինչպես կապիտալիստական երկրներում, որտեղ, իսկական ազատ ագիտացիայի մասին խոսք անգամ չի կարող լինել։

Գաղտնի քվեարկությունը և տրված ձայների ճիշտ հաշվումը նույնպես մեզ մոտ ապահովված է ընտրական օրենքով։



Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունների Կանոնադրությամբ սահմանված է, որ ամեն մեկը, ով բռնության, խաբեության, սպառնալիքի կամ կաշառքի միջոցով խոչընդոտ կհանդիսանա Հայկական ՍՍՌ քաղաքացուն՝ ազատորեն իրագործելու Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների Սովետներում ընտրելու և ընտրվելու իրավունքը, պատժվում է ազատազրկմամբ մինչև երկու տարի ժամանակով։ Իսկ Սովետի այն պաշտոնատար անձը կամ ընտրական հանձնաժողովի այն անդամը, որը ընտրական փաստաթղթերի կեղծիք կամ բացահայտորեն սխալ հաշվում է կատարել, պատժվում է ազատազրկմամբ մինչև երեք տարի ժամանակով։

Այսպես է սովետական օրենքն ապահովում ընտրողների իրավունքները։



## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

✪ Ցարական կառավարության օրով Հայաստանի բնակչության 90 տոկոսը անգրագետ էր։ Հայ աշխատավորության միայն չնչին մասին էր հաջողվում դպրոցական կրթություն ստանալ։ Դաշնակների տիրապետության տարիներին, ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի քայքայման հետ միասին, քայքայվեց նաև ժողովրդական կրթությունը։

✪ Սովետական Հայաստանում մեծ հաջողությամբ իրագործվեց բոլշևիկյան պարտիայի և մեր կառավարության որոշումը՝ պարտադիր ուսման մասին։ Այժմ մեր ռեսպուբլիկայում գործում է 1155 դպրոց, որտեղ սովորում են ավելի քան 280 հազար աշակերտ։ Մինչդեռ 1918-1919 ուսումնական տարում Հայաստանում կար ընդամենը 166 դպրոց՝ 18.600 աշակերտով։



✪ Մեր ռեսպուբլիկայի դպրոցներում աշխատում են 12.965 ուսուցիչ, որոնց զգալի մասը ունի բարձրագույն մասնագիտական կրթություն։

✪ Նախասովետական Հայաստանում չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն։ Այժմ մեր ռեսպուբլիկան ունի 13 բարձրագույն ուսումնական հաստատություն, որոնք սովետական իշխանության տարիների ընթացքում երկրին տվել են մոտ 25 հազար որակյալ ուսուցիչ, գյուղատնտես, ճարտարապետ, բժիշկ, անասնաբույժ և այլ բարձրորակ մասնագետներ։

✪ Հայկական ՍՍՌ լուսավորության բյուջեն աճում է տարեց-տարի։ Եթե 1940 թվին այն կազմում էր 171 միլիոն 600 հազար ռուբլի, ապա 1947 թ. այն հասավ 275 միլիոն ռուբլու։

✪ Լայնորեն զարգացել է մանկապարտեզների և այլ նախադպրոցական հիմնարկների ցանցը։ Մանկապարտեզների թիվը Հայաստանում այս տարի հասնում է 202-ի, որտեղ ընդգրկված են 11698 երեխա։

✪ Արագ թափով աճում է կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցը։ Ներ-

կայումն մեր Ռեսպուբլիկայում գործում են 1.150 ակումբ և կուլտուրայի տուն։ Լայնորեն տարածվել է գրադարանային ցանցը։ Ռեսպուբլիկայում գործում է 1733 քաղաքային, շրջանային, գյուղական, դպրոցական և ակումբային գրադարան։ Սովետական Հայաստանի կուլտուրական նվաճումներից է Երևանի Մյասնիկյանի անվան գրադարանը, որն ունի 2 միլիոն 200 հազար կտոր գիրք։ Կուլտուրական և գիտական խոշոր օջախ է հանդիսանում Մատենադարանը, որտեղ պահվում են մոտ 13.000 ձեռագրեր և մոտ 200 հազար արխիվային վավերագրեր։

✪ Ռեսպուբլիկայում գործում է 16 արհեստագործական դպրոց և ֆաբրիկա-գործարանային ուսումնարան, որտեղ սովորում են 4325 պատանի։

✪ Ավելի քան 14 հազար հայրենադարձ երեխաներ սովորում են մասսայական դպրոցներում, ֆաբգործուսներում, արհեստագործական ուսումնարաններում, անգրագետների և կիսագրագետների խմբակներում։

✪ Ռեսպուբլիկայի բոլոր շրջանային կենտրոններում գործում են ստացիոնար կինո-թատրոններ։ Կոլխոզնիկներին սպասար-



կելու համար տրամադրված է 51 հնչուն և համր շրջիկ կինո-սարքավորում։ Բազմաթիվ կոլխոզներ իրենց ակումբներում ունեն սեփական կինո-սարքավորումներ։ Ամբողջ ռեսպուբլիկայում գործում է 153 կինոթատրոն։

✪ Շրջանային 20 և քաղաքային 9 թատրոններ սպասարկում են մեր ռեսպուբլիկայի աշխատավորությանը։ Ռեսպուբլիկայում գործում են նաև ադրբեջանական, ռուսական և քրդական թատրոններ։

✪ Սովետական Հայաստանի գիտության և կուլտուրայի խոշորագույն նվաճումներից է Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիան, որը հիմնադրվեց 1943 թվին։ Ակադեմիայի սիստեմում գործում են 17 ինստիտուտ և 19 գիտահետազոտական հաստատություն։ Նրա շուրջն են համախմբված 21 ակադեմիկոս, 17 անդամ-թղթակից, 82 պրոֆեսոր-դոկտոր, 180 գիտության թեկնածու-դոցենտ, 89 ասպիրանտ և բազմաթիվ ավագ ու կրտսեր գիտական աշխատողներ։

✪ Նախասովետական շրջանում, Հայաստանում կար ընդամենը 4-5 մասնավոր

փոքրիկ տպարան։ 1945 թվին Հայաստանում կար ավելի քան 50 տպարան, որոնցից ամենախոշորը — Պետհրատի տպարանը 25 տարվա ընթացքում տպագրել է 7.024 անուն գիրք՝ ավելի քան 40 միլիոն տիրաժով։

***

✪ 1912 թվին Երևանի նահանգում յուրաքանչյուր քաղաքացու վրա առողջապահության նպատակով տարեկան ծախսվում էր ընդամենը 25 կոպեկ, 1946 թվին սովետական յուրաքանչյուր քաղաքացու վրա ծախսվել է 92 ռ. 54 կոպ.։

✪ 1900 թվին միայն Երևան քաղաքում 29.000 բնակչությունից մալարիայով հիվանդ էր 18.000 մարդ։ Մալարիայի դեմ կռվելու համար որևէ գործնական միջոց չէր ձեռնարկվում։ Դաշնակների տիրապետության շրջանում անասելի չափերի էր հասել մալարիայից մահացողների թիվը։ Սովետական իշխանության տարիներին ուժեղ պայքար է ծավալվել մալարիայի դեմ։ 1923 թվից Երևանում գործում է Մալարիայի ինստիտուտը, շրջաններում գործում են հակամալարիային 63 կայան։



✪ Նախասովետական Հայաստանում բնակավայրերի 87 տոկոսից ավելին բոլորովին զուրկ էր հիվանդանոցային բուժման հնարավորությունից։ 1913 թ. Հայաստանի քաղաքներում կար ընդամենը 4 փոքր մասնավոր հիվանդանոց, իսկ գյուղական վայրերում՝ 11 հիվանդանոց, յուրաքանչյուրը 4—6 մահճակալով։ Դաշնակցության օրով այդ գյուղական հիվանդանոցներից 4-ը փակվեց բժիշկներ չունենալու պատճառով։ Հիվանդանոցային մահճակալների թիվը հասնում էր ընդամենը 212-ի։

Սովետական Հայաստանում գործում են 77 հիվանդանոց, 3876 մահճակալով։

✪ Լայն ծավալ է ստացել բնակչության արտահիվանդանոցային բուժման գործը։ 1913 թվի 16 ամբուլատորիաների փոխարեն, 1946 թվին Հայաստանում գործում էր 264 ամբուլատորիա և 112 գյուղական բուժական տեղամաս։

✪ Ռեսպուբլիկայում գործում են 71 կանանց և մանկական կոնսուլտացիոն կայաններ։ Բազմաթիվ մշտական մանկամսուրներում ընդգրկված են 4436 երեխա։ Մշտական մսուրներից բացի, ամառային գյուղատնտե-

տակման աշխատանքների ընթացքում կազմակերպվում են նաև սեզոնային մանկամսուրներ։

✪ Ռեսպուբլիկայում լայն չափով ընդարձակվել է ծննդատների թիվը։ 1946 թ. ծննդատներում մահճակալների թիվը հասնում էր 649-ի։ Երևանում գործում է մայրության և մանկության պահպանության հատուկ ինստիտուտ։

✪ 1913 թվին Երևանի նահանգում կար ընդամենը 7 մասնավոր դեղատուն, որոնք նվազագույն չափով անգամ չէին կարողանում բավարարել բնակչության պահանջները։ Սովետական իշխանության տարիներին արագ կերպով աճեց դեղատների թիվը։ 1946 թվին Հայաստանում արդեն կար 66 դեղատուն։

✪ 1913 թվին ամբողջ Հայաստանում աշխատում էր ընդամենը 41 բժիշկ։ Միջին հաշվով յուրաքանչյուր 18000 քաղաքացուն ընկնում էր մեկ բժիշկ։ Այժմ Սովետական Հայաստանի բուժհիմնարկներում աշխատում են 1271 բժիշկ և 2628 միջին որակի բժշկական կադրեր։ 1922 թվին Երևանում կազմակերպվեց բժշկական ինստիտուտ, որն իր գոյության 25 տարվա ընթացքում պատրաստել է 1985 բժիշկ։



*ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ*

## ԱՄԵՐԻԿՅԱՆ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԱԳՐԵՍԻՎ ՊԼԱՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Ամերիկայի Միացյալ Նահանգների պրեզիդենտ Տրումենը 1947 թ. մարտի 12-ին մի ուղերձով դիմեց կոնգրեսին, խնդրելով հատկացնել 400 միլիոն դոլար Հունաստանին և Թյուրքիային օգնելու համար։

Ինչո՞վ բացատրել ԱՄՆ-ի այդ անսպասելի «բարեգործությունը»։ Մի՞թե իրոք Ամերիկայի կապիտալիստները, որոնք անչափ հարստացան պատերազմի հետևանքով, անկեղծ ցանկանում են օգնել հունական ժողովրդին։ Որ Հունաստանը օգնության կարիք է զգում պատերազմից քայքայված իր տնտեսությունը վերականգնելու համար, դա անկասկած է։ Բոլորին հայտնի է, որ Հունաստանի ժողովուրդը մինչև այժմ էլ չի օգտվում խաղաղության պտուղներից։

Անգլիական զորքերը երկրում ստեղծել են
իսկական օկուպացիոն ռեժիմ և չեն ուզում
հեռանալ այնտեղից։

Անգլիական զորքերի օգնությամբ իշխա-
նության գլուխ անցած ֆաշիստական-միա-
պետական ռեակցիոն կառավարությունը
տասնյակ հազարավոր դեմոկրատների բան-
տերն է նետել և մահապատժի ենթարկել։
Հունաստանում քաղաքացիական պատե-
րազմը չի դադարում։ Հունական Դեմո-
կրատական բանակը հերոսաբար կռվում է
երկրում իսկական դեմոկրատիա հաստա-
տելու համար։

Հասկանալի է, որ Ամերիկայի «օգնու-
թյան» նպատակն է պաշտպանել ռեակցիոն-
ֆաշիստական կառավարությունը և երկրում
ճնշել դեմոկրատական ուժերը։ Հունաս-
տանին «օգնություն» ցույց տալու ան-
հրաժեշտությունը Տրումենը պատճառաբա-
նում էր նրանով, որ Հունաստանին օգ-
նություն ցույց տվող անգլիական կառավա-
րությունը չի կարող նրան տրամադրել հե-
տագա տնտեսական օգնություն։ Տրումենը
ուղղակի հայտարարեց, որ ԱՄՆ-ը պատ-
րաստվում է փոխարինել Անգլիային։

Ահա թե ինչ է թաքնված այդ «բարեգոր-



ծության» տակ։ «Տրումենի դոկտրինան»
Հունաստանի վերաբերմամբ բացարձակ իմ-
պերիալիստական էքսպանսիայի քաղաքակա-
նություն է։ Վերացնել Հունաստանի պետա-
կան ինքնուրույնությունը, կոպիտ կերպով
նրա վզին փաթաթել ամերիկյան տիրապե-
տությունը— ահա՛ թե որն է ամերիկյան
«օգնության» իսկական իմաստը։

Իսկ ինչո՞վ բացատրել Թյուրքիային ցույց
տրվող «օգնությունը»։ Չէ՞ որ Թյուրքիան
բոլորովին չի տուժել պատերազմում։ Հայտ-
նի է նույնպես, որ Թյուրքիան բարեկամա-
կան «չեզոքություն» էր պահպանում հիտլեր-
յան Գերմանիայի նկատմամբ, մատակարա-
րում էր Գերմանիային ռազմական նշանա-
կություն ունեցող այնպիսի նյութեր, ինչպես
քրոմը, և այլն։

Տրումենն իր ուղերձում նշել է, որ Թյուր-
քիան ձգտում էր Անգլիայից ստանալ ֆի-
նանսական օգնություն, բայց բրիտանական
կայսրությունն իր սեփական դժվարություն-
ների պատճառով ի վիճակի չէ Թյուրքիային
ֆինանսական կամ տնտեսական օգնություն
ցույց տալ։ Միանգամայն պարզ է, որ
ԱՄՆ-ը ձգտում է Թյուրքիայում ևս ամե-
րիկյան տիրապետություն հաստատել։

«Տրումենի դոկտրինան» Եվրոպայի ժողովուրդները դիմավորեցին բացահայտ անվստահությամբ։ Նույնիսկ ԱՄՆ-ի ներսում էլ եղան առաջավոր մարդիկ, որոնք դատապարտեցին այդ բացարձակ իմպերիալիստական ծրագիրը։

ԱՄՆ-ի նախկին փոխ-պրեզիդենտ Ուոլլեսը հուլիսի 6-ին մի միտինգում հայտարարեց, որ ԱՄՆ-ը «բռնել է ինքնասպանության ուղին, համագործակցելով կամ պատրաստվելով համագործակցել աշխարհի ամեն մի երկրի ռեակցիայի հետ»։

«Տրումենի դոկտրինան» իրագործվում է ոչ միայն Հունաստանում և Թյուրքիայում, այլև մի շարք այլ երկրներում։ «Տրումենի դոկտրինան» իր լրիվ գործադրումն է գտել Չինաստանում, որտեղ ամերիկյան իմպերիալիստները հսկայական միջոցներ են տրամադրում Չան Կայ-շիին և ավելի ու ավելի մեծ չափերով զենք են մատակարարում նրան, դեմոկրատական բանակի և չինական ժողովրդի մյուս դեմոկրատական ուժերի դեմ պայքարելու համար։

«Տրումենի դոկտրինան» գործադրվում է նաև Ինդոնեզիայում։ ԱՄՆ-ը օգնում է հոլանդական իշխանություններին՝ այդ գաղու-



թում հոլանդական տիրապետությունը վերականգնելու համար։ «Տրումենի դոկտրինան» անաղմուկ կերպով գործադրվում է նաև Ֆրանսիայում ու Իտալիայում։ Այդ երկրներում ռեակցիոն տարրերի աշխուժացումը տեղի է ունենում ԱՄՆ-ի օգնությամբ և ակտիվ աջակցությամբ։

Այսպիսով դժվար չէ հասկանալ, որ «Տրումենի դոկտրինան» չի սպառվում Հունաստանին և Թյուրքիային ցույց տրվող օգնությամբ։

Դժվար չէ հասկանալ նաև այն, որ «Տրումենի դոկտրինան» մի ծրագիր է ԱՄՆ-ի տիրապետությունն ամբողջ աշխարհում հաստատելու համար։

«Տրումենի դոկտրինայի» ջերմ կողմնակից, Պենսիլվանիայի նահանգապետ Մարտինը հայտարարեց, որ Ամերիկայի Միացյալ Նահանգները «պետք է առաջ ընթանան մի ձեռքում ունենալով ատոմային ռումբը և մյուս ձեռքում՝ խաչը»։

Այժմ «Տրումենի դոկտրինան» դառնում է համաշխարհային ռեակցիայի դրոշը, բացարձակ կոչ բոլոր երկրների ռեակցիոներներին՝ իրենց ուժերը համախմբելու, որպեսզի ԱՄՆ-ի օգնությամբ հարձակման անց-

նեն դեմոկրատիայի ու սոցիալիզմի դեմ Եվրոպայում և ամբողջ աշխարհում։

Այս տարվա հունիսի 5-ին, այսինքն երեք ամիս անց այն բանից, երբ աշխարհին հայտնի դարձավ «Տրումենի դոկտրինան», Ամերիկայի Միացյալ Նահանգների պետական քարտուղար Մարշալը հանդես եկավ ճառով, որի մեջ առաջ քաշեց մի նոր պլան, որն այնուհետև հայտնի դարձավ «Մարշալի պլան» անունով։

Ի՞նչ է իրենից ներկայացնում «Մարշալի պլանը», որը գալիս է լրացնելու «Տրումենի դոկտրինային»։

Իր ճառի մեջ ԱՄՆ-ի պետական քարտուղար Մարշալը մշուշապատ և անորոշ հայտարարություն արեց։ ԱՄՆ-ի, Անգլիայի և այլ երկրների մամուլն այդ հայտարարությունը մեկնաբանեց որպես առաջարկություն եվրոպական երկրներին՝ միանալու, մշակելու իրենց տնտեսության վերականգնման համատեղ պլան և ներկայացնելու այդ պլանը ԱՄՆ-ին։ Եթե ԱՄՆ-ը ընդունելի համարի այդ պլանը, ապա եվրոպական երկրներին վարկ կտրամադրվի։

Անգլիայի և Ֆրանսիայի մամուլը, հատկապես կառավարական շրջաններին մոտ գտնվող թերթերը, սկսեցին գրել «Եվրոպան



փրկելու պլանի մասին», ամերիկյան իմպերիալիզմի «մարդասիրության», «առատաձեռնության» մասին։ Անգլիայի արտաքին գործերի մինիստր Բևինը շտապեց Փարիզ՝ Ֆրանսիայի արտաքին գործերի մինիստր Բիդոյի հետ Մարշալի առաջարկության մասին խորհրդակցելու համար։ Այդ խորհրդակցությունից հետո երկու մինիստրները դիմեցին Սովետական կառավարությանը՝ առաջարկելով մասնակցել «Մարշալի պլանի» քննարկմանը։ Հունիսի 27-ին Փարիզում բացվեց ՍՍՌՄ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի արտաքին գործերի մինիստրների խորհրդակցությունը։ Անգլիան և Ֆրանսիան մինիստրների խորհրդակցությանը ներկայացրին իրարից շատ քիչ տարբերվող պատրաստի նախագծեր։ Խորհրդակցության վերջին նիստում Սովետական կառավարության ներկայացուցիչ ընկ. Մոլոտովը վճռական քննադատության ենթարկեց անգլո-ֆրանսիական նախագիծը։ Նա նշեց, որ այդ նախագիծը չի համապատասխանում եվրոպական ժողովուրդների շահերին, և նրանց ներքին գործերին միջամտելու մի փորձ է։

Խորհրդակցությունից անմիջապես հետո Բևինը և Բիդոն եվրոպական 22 պետու-

թյունների հրավեր ուղարկեցին «Մարշալի պլանի» քննարկմանը մասնակցելու համար։ Արդյունքն այնքան գոհացուցիչ չեղավ, ինչպես սպասում էին խորհրդակցության կազմակերպիչները, որոնք հույս ունեին մեկուսացնել Սովետական Միությանը։ Խորհրդակցությունը խայտառակ կերպով ձախողվեց։ Եվրոպական 8 պետություններ՝ Լեհաստանը, Հարավսլավիան, Բուլղարիան, Չեխոսլովակիան, Ռումինիան, Հունգարիան, Ֆինլանդիան և Ալբանիան մերժեցին այդ հրավերը։

Այդ պետությունները մերժեցին խորհրդակցությանը մասնակցել, որովհետև նրանք չեն ցանկանում զոհել իրենց անկախությունը։ Այդ պետություններից մի քանիսը՝ Հարավսլավիան, Չեխոսլովակիան, Լեհաստանը և Բուլղարիան ունեն իրենց տնտեսությունը վերականգնելու սեփական պլաններ և հաջողությամբ իրագործում են դրանք։ Նրանք չեն ցանկանում, որպեսզի վերականգնվի նախապատերազմյան Եվրոպան, որի տնտեսության մեջ գերակշռող դեր ունենա Գերմանիան։

Այդ պետությունները չցանկացան մասնակցել մի կասկածելի խորհրդակցության,



որի նպատակն էր Եվրոպան բաժանել երկու լագերի, ստեղծել արևմտյան բլոկ՝ ուղղված Սովետական Միության և Եվրոպայի դեմոկրատական երկրների դեմ։ Խորհրդակցությունից անմիջապես հետո միանգամայն պարզ դարձան ԱՄՆ-ի և Անգլիայի պլանները Գերմանիայի վերաբերմամբ։ Այդ պլանների հիմնական իմաստն այն է, որ նրանք ցանկանում են վերականգնել նախապատերազմյան Գերմանիան։

Որո՞նք են «Մարշալի պլանի» իսկական նպատակները։

Մի քանի կոմպարտիաների ներկայացուցիչների խորհրդակցությունում տված իր զեկուցման մեջ խոսելով Եվրոպան ստրկացնելու ամերիկյան պլանի մասին, ընկ. Ժդանովն ասաց.

«Ամերիկյան իմպերիալիզմը ձգտում է, որպես վաշխառու, օգտագործել եվրոպական երկրների հետպատերազմյան դժվարությունները, մասնավորապես հումքի, վառելանյութի և պարենամթերքի պակասությունը պատերազմից առավելապես տուժած դաշնակից երկրներում, որպեսզի օգնության իր ստրկական պայմանները թելադրի նրանց։ Առաջիկա տնտեսական ճգն-

նաժամը կանխատեսելով, ԱՄՆ-ը շտապում է գտնել կապիտալի ներդրման և ապրանքների վաճառահանման նոր մոնոպոլ սֆերաներ։ ԱՄՆ-ի տնտեսական «օգնությունը» հետապնդում է ամերիկյան կապիտալի կողմից Եվրոպան սարկացնելու լայն նպատակը»։

Երկրորդ համաշխարհային պատերազմում ԱՄՆ-ի մոնոպոլիստները բազմապատկեցին իրենց հարստությունները, ուժեղացավ նրանց ազդեցությունը երկրի ներսում և երկրից դուրս։ Իսկ պետությունների մեծ մասը հիտլերյան Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի դեմ մղած պատերազմում խիստ տուժեցին, մի շարք տարիների ընթացքում կրելով հիտլերյան օկուպացիայի դաժան լուծը։

Ահա թե ինչու ԱՄՆ-ի կառավարող շրջանները գտնում են, որ «համաձայն ուժեղի իրավունքի» իրենք պետք է տիրեն աշխարհին։ Միևնույն ժամանակ պետք է նկատի ունենալ նաև այն, որ Ամերիկան ինքը գտնվում է տնտեսական ճգնաժամի սպառնալիքի տակ— աճում է ապրանքների պաշարը պահեստներում, կրճատվում է բնակչության գնողունակությունը, մեծանում է գործազրկությունը։



Համաշխարհային տիրապետություն ձեռք բերելու ձգտումը, երկյուղը սպառնացող տնտեսական ճգնաժամի առջև, իրենց ազատությունը և անկախությունը հերոսաբար պաշտպանող ժողովուրդների նկատմամբ ատելությունը, ամերիկյան իմպերիալիստներին մղում են դեպի էքսպանսիայի ճանապարհը։

Սովետական Միությունը պաշտպանում է այն դիրքը, որ տնտեսական վերականգնման հիմնական միջոցը պետք է լինի յուրաքանչյուր երկրի ներքին ուժերի և ռեսուրսների օգտագործումը և սեփական ինդուստրիայի ստեղծումը։

«Ներկայումս կառավարող շրջանները Ամերիկայի Միացյալ Նահանգներում, ինչպես և Մեծ Բրիտանիայում կանգնած են միջազգային մի խմբավորման գլուխ, որն իրեն նպատակ է դրել՝ ամրապնդել կապիտալիզմը և այդ երկրների տիրապետությունը հաստատել մյուս ժողովուրդների նկատմամբ... Սովետական Միության քաղաքականությունը հիմնված է հակառակ սկզբունքների վրա, փոքր և մեծ պետությունների սուվերենությունը հարգելու սկզբունքների, մյուս երկրների ներքին գործերին չմիջամտելու սկզբունքների վրա» (Մոլոտով)։

ԳԻՆԸ 1 Ռ.

Սովետական Միությունը և հակաիմպերիալիստական լագերին պատկանող մյուս երկրները համոզված են, որ «Մարշալլի պլանը» Եվրոպային ստրկացում է բերում, նա չի կարող վերականգնել եվրոպական երկրների տնտեսությունը, նա չի կարող հասնել նաև այն նպատակին, որին ձգտում են նրա հեղինակները, որովհետև դա Ամերիկայի Միացյալ Նահանգների համաշխարհային տիրապետությունը հաստատելու պլան է։ Իսկ այդպիսի պլանները, որ անցյալում միշտ տապալվել են, այժմ առավել ևս կտապալվեն, որովհետև աշխարհի ժողովուրդները հաղթանակ ձեռք բերելով ֆաշիզմի դեմ, սովորել են պաշտպանել իրենց ազատությունն ու անկախությունը։

Ս. ԻՇԽԱՆՅԱՆ

---

Պատասխանատու խմբագիր՝
ԱՐ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

ՎՖ. 03879 Պատվեր № 1430 Տիրաժ 9600
Ստորագրված է տպագրության 29/XI 1947 թ.
Պոլիգրաֆ և հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
Блокнот Агитатора